LE PREMIER QUOTIDIEN ARMENIEN EN FRANCE

# ՅԱՌԱՋ

ՕՐԱԹԵՐԹ

HARATCH - Fondé 1925 -
R. C. S. 376.286
Directeur-Propriétaire : SCH. MISSAKIAN
17, Rue Damesme — PARIS (13e)
Tél.: GOB. 15-70 — C. C. P. Paris 1678-63

ԲԱԺԱՆԵԳԻՆ.— Տար. 750, 6ամս. 400, 3ամս. 200 ֆրանք

Jeudi 25 Avril 1946 Հինգշաբթի 25 Ապրիլ

ԺԸ ՏԱՐԻ — 18e Année N 4594-Նոր շրջան թիւ 323 Խմբագիր՝ Շ. ՄԻՍԱՔԵԱՆ Գին՝ 3 ֆր

ՄԵՐ ԽՕՍՔԸ

## ՆՈՐ ԿԱՐԳՈՒՍԱՐՔ

1946 Ապրիլ 19ը նոր էջ մը կը բանայ Ֆրանսայի ժամանակակից պատմութեան մէջ:

Այդ օրը Ազգ. Ժողովը 249ի դէմ 309 ձայնով վաւերացուց նոր Սահմանադրութիւնը, որու մասին ժողովուրդը իր վճիռը պիտի արձակէ յառաջիկայ Մայիս 5ին:

Եթէ «այո» պատասխանէ, այսուհետեւ այդ Հիմնական Օրէնքով պիտի կառավարուի Ֆրանսան: Եթէ մերժէ, դարձեալ Ազգ. Ժողով մը պիտի գումարուի, նոր Սահմանադրութիւն մը յօրինելու համար: Ուրիշ խօսքով, եօթը ամիս եւս պիտի շարունակուի առժամեայ կարգուսարքը, որ այնքան ալ բաղձալի չի համարուիր:

Ինչպէս կ'իմանաք օրուան լուրերէն, պայքարն սկսած է արդէն մեծ ու փոքր հոսանքներու կողմէ, «այո» կամ «ոչ» պատասխանը կորզելու համար:

Ձախերը վճռած են ամէն գնով ընդունիլ տալ Նոր Սահմանադրութիւնը, իբրեւ վերջնական: Չափաւորներն ու աջերն ալ իրենց կարգին կը ճգնին վարկաբեկել զայն, կոչելով հակահանրապետական: Մինչեւ անգամ... «Փաշական»: Ազդարարելով թէ հետեւանքը պիտի ըլլայ կուսակցական դիկտատուրա, ի վերջոյ յանգելով համայնավար մենատիրութեան:

Ինչո՞ւ այսքան բուռն հանգամանք ստացած է պայքարը, իրարու դէմ հանելով նոյն իսկ Դիմադրական Ճակատին զանազան հոսանքները: Ի՞նչ են հին եւ Նոր Սահմանադրութեան հիմնական տարբերութիւնները:

1. Հին Սահմանադրութեամբ, Ֆրանսան իբրեւ օրէնսդիր իշխանութիւն ունէր Խորհրդարան մը, որ կը բաղկանար երկու ժողովներէ,— Երեսփ. Ժողով եւ Ծերակոյտ: Նոր Սահմանադրութիւնը կը ջնջէ Ծերակոյտը, ամէն իրաւասութիւն յանձնելով Ազգ. Ժողովին, որ կ'ընտրուի ընդհ. ընտրութեամբ, հաւասար, ուղղակի եւ գաղտնի:

Ընդդիմադիրները դիտել կուտան թէ այս դրութեամբ գլխաւոր կուսակցութիւնները կը դառնան տէր տիրական, իրենց տեսակէտներն ու ծրագիրները պարտադրելով երկրին: Ճիշդ է որ Սահմանադրութիւնը կը նախատեսէ երկու նոր մարմիններ,— Ֆրանսական Միութեան Գերագոյն Խորհուրդ եւ Տնտեսական Խորհուրդ, բայց անոնք պարզապէս խորհրդատու օրկաններ են, չունին որ եւ է օրէնսդրական իրաւունք: Հետեւաբար, չեն կրնար հակակշռել կամ հաւասարակշռել Ազգ. Ժողովին որոշումները:

2. Հին Սահմանադրութեամբ, Հանրապետութեան Նախագահը կ'ընտրէին Երեսփ. Ժողովը եւ Ծերակոյտը, բացարձակ մեծամասնութեամբ, միասնաբար հաւաքուելով իբրեւ Ազգ. Ժողով: Նոր Սահմանադրութեամբ, Նախագահը կ'ընտրուի միայն Ազգ. Ժողովին կողմէ, հրապարակային քուէարկութեամբ եւ 2)3ի մեծամասնութեամբ: Նախագահը չունի օրէնքներ առաջարկելու, ներում շնորհելու, վարչապետ նշանակելու, Ազգ. Ժողովը լուծելու եւն. իրաւունք: Միայն թեկնածուներ կրնայ առաջարկել Ազգ. Ժողովին, որ կ'ընտրէ իր ուզած վարչապետը: Այս վերջինը շատ աւելի լայն իրաւունքներ կը վայելէ քան առաջ, բայց միեւնոյն ատեն ուղղակի ենթակայ է Ազգ. Ժողովին ազդեցութեան: Նախագահին կողմէ ստորագրուած որ եւ է Թուղթ պէտք է կրէ նաեւ վարչապետին եւ իրաւասու Նախարարին ստորագրութիւնը:

3. Նոր Սահմանադրութեամբ, գերիշխան Ազգ. Ժողովին ենթակայ է նաեւ դատական իշխանութիւնը, որ առաջ անկախ էր քաղաքական ազդեցութենէ: Դատական Բարձրագոյն Խորհուրդին 12 անդամներէն մէկը Նախագահն է, մէկը՝ դատական նախարարը, վեցը պիտի ընտրուին Ազգ. Ժողովին կողմէ, մնացեալները պիտի ըլլան չորս դատաւորներ:

4. Ընտրական օրէնքը չափազանց բարդ է, եւ մեծ չափով կը կաշկանդէ փոքր կուսակցութիւնները: Ընտրողները իրաւունք չունին իրենց ուզած թեկնածուները արձանագրելու ցանկերու մէջ: Ուրեմն, ո՛վ որ լայն միջոցներ եւ զօրաւոր կազմակերպութիւն ունի, կրնայ մեծամասնութիւն շահիլ եւ տիրապետել Ազգ. Ժողովին մէջ:

Դեռ ուրիշ «փուշեր» ալ կը մատնանշեն ընդդիմադիրները: Խնդիրը այն է որ այլեւս կարելի չէ կասեցնել Նոր Հոսանքը, որուն ետին կեցած են քաղաքական, աշխատաւորական եւ արհեստակցական հզօր կազմակերպութիւններ:

Նորէն բախտորոշ օրեր: Երկունք: Շ.

## ՆՈՐ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆԸ

### Յայտարարութիւն Մարդու Իրաւունքներու

Յօդ. 11.— Օրէնքը բոլոր մարդոց համար կ'ապահովէ իր դատը պաշտպանելու իրաւունքը եւ նիւթական միջոցներու անբաւականութիւնը չի կրնար արգելք ըլլալ ատոր:

Յօդ. 12.— Պատժական գործերու մէջ, դատական իրաւասութեանց նոյնութիւնը նոյն հողամասին վրայ երաշխաւորուած է Ֆրանսական Միութեան բոլոր բնակիչներուն համար:

Յօդ. 13.— Ոչ ոք կրնայ նեղուիլ իր ծագման, կարծիքներու կամ դաւանանքին համար՝ կրօնական, փիլիսոփայական կամ քաղաքական տեսակէտով: Խղճի եւ պաշտամունքի ազատութիւնը երաշխաւորուած է պետութեան չէզոքութեամբ՝ հանդէպ ամէն դաւանութեանց եւ պաշտամունքներու: Այդ ազատութիւնը երաշխաւորուած է մանաւանդ Եկեղեցիներու եւ պետութեան բաժանումով, ինչպէս եւ իշխանութեանց եւ հանրային ուսուցման աշխարհականութեամբ:

Յօդ. 14.— Ամէն մարդ ազատ է խօսելու, գրելու, տպելու, հրատարակելու: Ան կրնայ մամուլի միջոցաւ կամ ուրիշ որ եւ է եղանակով արտայայտել, տարածել եւ պաշտպանել ամէն կարծիք այն չափով որ չարաչար չի գործածեր այդ իրաւունքը, մասնաւորապէս բռնաբարելու համար այս յայտարարութեամբ երաշխաւորուած ազատութիւնները կամ ուրիշին համբաւին վնասելու համար: Կարծիքի որ եւ է արտայայտութիւն չի կրնար պարտադրուիլ:

Յօդ. 15.— Ամէն մարդ իրաւունք ունի ազերսագիր ուղղելու հանրային իշխանութեանց, անհատական կամ հաւաքական խնդիրներ քննել տալու համար:

Յօդ. 16.— Ամէնուն համար երաշխաւորուած է ազատութիւնը թափօր կազմելու հրապարակի վրայ եւ ժողովներ գումարելու:

Յօդ. 17.— Բոլոր մարդիկ իրաւունք ունին ազատօրէն ընկերակցութիւն կազմելու, պայմանաւ որ իրենց ընկերակցութիւնը չվնասէ կամ չձգտի վնասել ներկայ յայտարարութեամբ երաշխաւորուած ազատութեանց: Ոչ ոք կրնայ բռնադատուիլ անդամակցելու ընկերակցութեան մը:

Յօդ. 18.— Հանրային պաշտօնները բաց են, առանց ուրիշ պայմանի բայց եթէ նկատի առնելով կարողութիւնները, ընդունակութիւնները եւ տաղանդները, Ֆրանսական Միութեան ամէն հըպատակի առջեւ, որ կը վայելէ ներկայ Սահմանադրութեամբ քաղաքացիին տրուած իրաւունքները:

Անհատական բոլոր արհեստները, գործերը եւ պաշտօնները բաց են, միեւնոյն պայմաններով, Ֆրանսական Միութեան ամէն հպատակի առջեւ, եւ, եթէ օրէնքով սահմանուած կանոնագիր մը չկայ, ամէն անձի առջեւ որ օրինապէս կ'ապրի Ֆրանսական Միութեան մէջ: Աշխատանքի, պաշտօնի, աստիճանի, դասակարգի, պատասխանատուութեան հաւասարութեամբ, ամէն մէկն իրաւունք ունի նիւթական եւ բարոյական վիճակի հաւասարութեան:

Յօդ. 19.— Ներկայ յայտարարութեամբ երաշխաւորուած իրաւունքներուն գործադրութիւնը չի կրնար կախակայուիլ: Բայց եւ այնպէս, երբ ներկայ Սահմանադրութեամբ ճշդուած պայմաններու մէջ, Հանրապետութիւնը վտանգի տակ հռչակուի, 5, 8, 14 (հատ. Ա.) եւ 16 յօդուածներով պարզուած իրաւունքները կը կախակայուին օրէնքով նշանակուած սահմաններով եւ ձեւերով: Այս միջոցը չի կրնար տնօրինուիլ վեց ամիսէն աւելի տեւողութեամբ: Կրնայ վերանորոգուիլ միեւնոյն ձեւերով: Ո՛վ որ չարաչար կը գործածէ զայն, քմահաճօրէն վնասելու համար ուրիշի նիւթական կամ բարոյական իրաւունքներուն, անձնապէս պատասխանատու պիտի մնայ: Բացառիկ շրջանին վերջանալէն ետք, ով որ ինքզինքը վնասուած կը նկատէ անձամբ կամ գոյքերով, կրնայ բարոյական կամ նիւթական հատուցում պահանջել դատարաններու առջեւ:

Յօդ. 20.— Մարդուն եւ քաղաքացիին իրաւունքներուն երաշխաւորութիւնը անհրաժեշտ կը կացուցանէ հանրային ուժ մը: Այդ ուժը, հաստատուած բոլորի բարիքին համար եւ ոչ թէ յօգուտ անոնց որոնց յանձնուած է, պէտք է տեւականապէս մնայ ի սպաս գերիշխան ժողովուրդին:

Յօդ. 20bis.— Օրէնքը չի կրնար յետադարձ ազդեցութիւն ունենալ:

(2) (Շար.)

## ԱՅՍՕՐՈՒԱՆ ԺՈՂՈՎԸ

### Պիտի կրնա՞ն համաձայնիլ

Այսօր, Հինգշաբթի, կը բացուի Չորսերու Ժողովը, Ծերակոյտի շէնքին մէջ, մասնակցութեամբ 350 պատուիրակներու եւ մասնագէտներու: Չորս մեծ պետութեանց գլխաւոր պատուիրակներն են արտաքին նախարարները, իրենց անմիջական խորհրդականներով: Կան բազմաթիւ մասնագէտներ: Թերթերը կը գրեն թէ Փարիզ հասած են 150 Ռուսեր, որոնց մէջ կը գտնուի Միջին Արեւելքի գործերու վարիչը, Տէքանոզով եւ սպայակոյտին դերնախագահը, զօր. Սլավին:

Խորհրդաժողովին գլխաւոր գործը պիտի ըլլայ կարգադրել այն խնդիրները որոնք անլոյծ մնացին Լոնտոնի մէջ, անցեալ Սեպտեմբերին եւ Մոսկուայի մէջ՝ Դեկտեմբերին:

Ժողովը պիտի խմբագրէ Իտալիոյ, Ռումանիոյ, Պուլկարիոյ, Հունգարիոյ եւ Ֆինլանտայի հաշտութեան դաշնագիրները, բայց ամէն բանէ առաջ պիտի փորձէ հարթել բուն իսկ մեծ պետութեանց միջեւ ծագած վէճերը, մասնաւորապէս հիւս. Ափրիկէի իտալական գաղթավայրերու, Թրիէսթէի, Երկոտասան կղզիներու եւն. մասին: Անգլիոյ, Մ. Նահանգներուն եւ Ֆրանսայի մէջ կը կարծեն թէ այս վէճերուն գլխաւոր պատճառն է Խ. Միութեան ձգտումը՝ իր ազդեցութիւնը տարածելու Միջին Արեւելքի եւ արեւելեան Միջերկրականի մէջ: Այս առթիւ, տարօրինակ պարագայ մը,— Ֆրանսա, ժողովին հրաւէրներն ուղղած ըլլալով հանդերձ, պիտի չկրնայ մասնակցիլ շատ մը խնդիրներու քննութեան, որոնք մենաշնորհ դարձած են միւս Երեք Մեծերուն համար: Բայց եւ այնպէս պիտի կրնայ տիրական դեր կատարել, իբրեւ միջնորդ:

Անգլիական եւ ամերիկեան թերթերը շատ լաւատես չեն երեւար ժողովին յաջողութեան մասին: Այս առթիւ դիտել կուտան թէ Մ. Նահանգներու արտաքին նախարարը, Պ. Պըրնս, այս անգամ աւելի վճռական դիրք պիտի բռնէ, ճակատ ճակտի պայքարելով Պ. Մոլոթովի դէմ: Մինչեւ անգամ կ'ըսեն թէ պիտի առաջարկէ անջատ դաշնագիրներ կնքել Իտալիոյ եւ միւս պարտուած պետութեանց հետ, եթէ ընդհանուր համաձայնութիւն չգոյանայ: Կը կարծուի թէ Անգլիոյ արտաքին նախարարն ալ պիտի ձայնակցի այս առաջարկին:

Իրազեկներու կարծիքով, ժողովին յաջողութիւնը մեծապէս կախում ունի Խ. Միութեան դիրքէն: Բոլոր նշանները կը ցուցնեն թէ Մ. Նահանգները թոյլ պիտի չտան որ աւելի ծաւալի Ռուսիոյ ազդեցութիւնը Միջերկրականի մէջ, ծանրապէս վնասելով Անգլիոյ կենսական շահերուն: Ինչպէս գիտեն ընթերցողները, Խ. Միութիւնը կը պահանջէ Ափրիկեան Տրիպոլսոյ խնամակալութիւնը: Ամերիկեան տեսակէտով, այս պիտի նշանակէր կարեւոր խարիսխ մը յանձնել Խ. Միութեան, Միջերկրականի այդ մասին մէջ: Ռուսերը աչք ունին նաեւ Երկոտասան կղզիներուն վրայ, ուր եթէ խարիսխ մը ճարեն, պիտի կրնան տիրապետել Տարտանէլի ճամբաներուն վրայ: Այսպէս ինքնին պիտի ծագի նաեւ Տարտանէլի խնդիրը:

Թերթերը կը գրեն թէ իւրաքանչիւր պատուիրակութիւն 70—100 անդամներ պիտի ունենայ, քաղաքական, զինուորական եւ աշխարհագրական մասնագէտներով:

## ԻՐԱՆԵԱՆ ԹՆՃՈՒԿԸ

### Կրոմիքօ նորէն կը բողոքէ

Ապահովութեան Խորհուրդի Ապրիլ 23ի նիստին մէջ, 3ի դէմ 8 ձայնով մերժուեցան Ֆրանսական պատուիրակին իրաւախոհութեան բանաձեւը եւ Իրանի խնդիրը օրակարգէն ջնջելու առաջարկը, զոր կրկնած էր խորհրդային պատուիրակը, Պ. Կրոմիքօ: Այս որոշումէն անմիջապէս վերջը Պ. Կրոմիքօ յայտարարեց թէ խնդիրը օրակարգի վրայ պահելու որոշումը հակառակ է Միացեալ Ազգերու դաշինքին, քանի որ Խ. Միութիւնը եւ Իրան համաձայնած են արդէն: Յետոյ աւելցուց թէ այլեւս չեն կրնար մասնակցիլ ժողովին: Բայց եւ այնպէս խորհրդային պատուիրակութիւնը չհեռացաւ ժողովէն, որ յետաձգուեցաւ հինգշաբթի օրուան:

Ֆրանսական բանաձեւը, որուն միացան Լեհաստան եւ Խ. Միութիւնը, կ'առաջարկէր Մ. Ա. Կ. ընդհ. քարտուղարին յանձնել իրանեան հարցին քննութիւնը եւ տեղեկագիր մը ներկայացնել յառաջիկայ նստաշրջանին, որ պիտի բացուի Սեպտեմբեր 3ին: Վիճաբանութեանց ընթացքին դէմ դիմաց ելան խորհրդային եւ ամերիկեան պատուիրակները: Պ. Կրոմիքօ մեղադրեց թէ իր ընդդիմադիրները կ'ուզեն զոհել Մ. Ա. Կ. դաշինքը, օրակարգին վրայ պահելու համար իրանեան խնդիրը եւ թէ այս ընթացքը կրնայ ցաւալի հետեւանքներ ունենալ: Ամերիկեան պատուիրակն ալ նոյն ձեւով պատասխանեց: Այս առթիւ պատկերալից բացատրութիւններ ալ գործածուեցան: Չինական պատուիրակը ըսաւ Պ. Կրոմիքոյի.— «Զգեցէք որ քնացող շուները պառկած մնան»: Պ. Կրոմիքօ ալ պատասխանեց թէ Ապահովութեան Խորհուրդը

(Լուրերու շարունակութիւնը կարդալ Դ. էջ)

